Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ






№ 6 ՄԱՐՏ 1955

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---


Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին: Հեռախոս 2—52—78:






# ԵԳԻՊՏԱՑՈՐԵՆԸ ԼԱՅՆՈՐԵՆ ԱՐՄԱՏԱՎՈՐԵՆՔ ԿՈԼՏՆՏԵՍԱՅԻՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ


Ա. ՄԱԹԵՎՈՍՅԱՆ

Պրոֆեսոր, գյուղատնտեսական գիտությունների դոկտոր


Անասնաբուծության զարգացման կարևորագույն միջոցառումներից մեկը դա կերի կայուն բազայի ստեղծումն է, առանց որի անհնարին է բարձրացնել նրա մթերատվությունը:

Հայկական ՍՍՌ-ում կերի կայուն բազայի ստեղծման խնդրում բնական խոտհարքների և արոտների հետ միասին մեծ նշանակություն ունի ցանովի կերաբույսերի մշակությունը: Անհրաժեշտ է ստեղծել կանաչ ու չոր խոտի, սիլոսի, խտացրած և այլ տեսակի կերերի պաշարներ:

Հատուկ ուշադրություն պետք է դարձնել շատ սիլոս կուտակելու գործին: Ամենալավ սիլոսը ստացվում է եգիպտացորենից, որովհետև նա իր մեջ պարունակում է մեծ քա-





նակությամբ հեշտ խմորվող շաքարներ և շուտ է սիլոսացման ենթարկվում։ Եգիպտացորենը իր հատիկի և կանաչ մասսայի բերքատվությամբ հացաբույսերի շարքում գրավում է առաջին տեղը։

Անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու մասին Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Հունվարյան պլենումի որոշման մեջ ասված է. «Եգիպտացորենի արժեքավորությունն այն է, որ միայն այդ կուլտուրան միաժամանակ լուծում է երկու խնդիր՝ հացահատիկի ռեսուրսների համալրումը և եգիպտացորենի ցողուններից լավ սիլոսի ստացումը»։ Հայտնի է, որ շատ առաջավոր տնտեսություններում եգիպտացորենի հատիկը օգտագործում են խոզերին կերակրելու համար։ Գործնականում ապացուցված է, որ խոզերին եգիպտացորենով կերակրելու դեպքում, յուրաքանչյուր 4 ցենտներ եգիպտացորենի հատիկից նրանց կշիռն ավելանում է մեկ ցենտներով։ Եգիպտացորենով կերակրած խոզերի ճարպի և մսի որակը բարձր է լինում։

Եգիպտացորենի ցողուններն ու տերևները նույնպես թանկարժեք կեր են հանդիսանում հատկապես խոշոր եղջերավոր անասունների համար։ Այն կարելի է օգտագործել կա-



նաչ, չոր և սիլոսացած վիճակում։ Եգիպտացորենից պատրաստած սիլոսը իր որակական ցուցանիշներով համարվում է ամենալավը։

Հայտնի է, որ եգիպտացորենից պատրաստված յուրաքանչյուր մեկ ցենտներ սիլոսը համարժեք է 20—22 կերի միավորի (1 կիլոգրամ վարսակի հատիկն ընդունվում է որպես 1 կերի միավոր)։ Ագրոտեխնիկական նորմալ պայմաններում մեզ մոտ եգիպտացորենի յուրաքանչյուր մեկ հեկտարից հնարավոր է ստանալ 600—700 ցենտներ կանաչ մասսա։ Այդ մասսայից պատրաստված սիլոսը համարժեք է 12 հազար կերի միավորի, ուրիշ խոսքով՝ 120 ցենտներ վարսակի հատիկի։ Հայտնի է նաև այն, որ մեզ մոտ այդքան վարսակի հատիկ հնարավոր է ստանալ 10 հեկտար տարածությունից։

Մեծ է նաև եգիպտացորենի ագրոտեխնիկական նշանակությունը։ Որպես շարահերկ կուլտուրա, վճռական դեր է խաղում ինչպես դաշտային, այնպես էլ կերային ցանքաշրջանառությունում, պայքարում է մոլախոտերի դեմ, որով և նպաստում է գյուղատնտեսական այլ կուլտուրաների բերքատվության բարձրացմանը։ Միաժամանակ

շատ տեղերում եգիպտացորենն օգտագործում են որպես ձյուն կուտակելու միջոց։

ՍՄԿԿ Կենտկոմի Հունվարյան պլենումը որոշել է՝ «մեծ նշանակություն տալով եգիպտացորենի՝ որպես հացահատիկի համախառն բերքի ավելացման կարևորագույն ռեզերվի, ցանքերի ընդարձակմանը, անհրաժեշտ գտնել, մինչև 1960 թվականը եգիպտացորենի ցանքատարածությունները հասցնելու առնվազն 28 միլիոն հեկտարի։ Եգիպտացորենը, որպես առավել բերքատու հացահատիկային կուլտուրա, պետք է լայն տարածում ստանա երկրի բոլոր շրջաններում»։

Պլենումի այդ որոշումները միանգամայն հնարավոր է լրովին կենսագործել Հայկական ՍՍՌ-ի բոլոր շրջաններում։ Եգիպտացորենը գարնանը ցանելու դեպքում տալիս է ինչպես հատիկի, այնպես էլ կանաչ մասսայի մեծ բերք։ Արարատյան դաշտի շրջաններում, ինչպես նաև նախալեռնային շրջանների ջրովի հողերում, եգիպտացորենը հնարավոր է մշակել նաև աշնանացան հացաբույսերի բերքահավաքից հետո սիլոսի համար և ստանալ յուրաքանչյուր հեկտարից 600—700 ցենտներ կանաչ մասսա։

Եգիպտացորենն ընդհանրապես բազմաթիվ ձևերով է տարածված։ Հայտնի են նրա



կարծր, շաքարային, օսլայաշատ, ճաքվող, թեփուկավոր և այլ ձևերը։

Եգիպտացորենի այդ խմբերը իրարից տարբերվում են բույսերի բարձրությամբ, բերքատվությամբ, ձևով ու մեծությամբ, տերևների քանակով և վեգետացիայի տևողությամբ։

Մեր ռեսպուբլիկայի հողակլիմայական պայմաններում եգիպտացորենի վերոհիշյալ խմբերից հատիկի ու կանաչ մասսայի բարձր բերք ստանալու նպատակով, պետք է մշակել ատամնաձև ու կարծր խմբերին պատկանող բարձրացողուն տեսակները։ Այս տեսակները ավելի շատ հատիկ և հաստ ու հյութալի ցողուններ, խոշոր ու շատ տերևներ են տալիս։

Եգիպտացորենի բերքատվության բարձրացումը խիստ կերպով կախված է ագրոտեխնիկական միջոցառումները ճիշտ ժամկետին ու բարձր որակով կատարելուց։

Բարձր բերքի վարպետները աշնանը, ժամանակին ու խնամքով կատարում են խոր վար։ Այդ միջոցով հողի մեջ կուտակվում է խոնավություն և մեծ մասամբ ոչնչանում են մոլախոտերը։ Եգիպտացորենի սերմերի ծլման համար ստեղծվում է նպաստավոր պայման։

Առանձնահատուկ խնամքով պետք է կա-

տարել եգիպտացորենի սերմացուի նախապատրաստումը։ Եգիպտացորենի բարձր բերքի վարպետ, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս, Ստալինյան մրցանակի լաուրեատ Մ. Ե. Օզյորնին սերմի նախապատրաստումը սկսում է դաշտից՝ առանձնացնելով այն բույսերը, որոնք փարթամորեն աճել են, վաղահաս են ու չեն վնասվել հիվանդություններից և ունեն շատ կողրեր։ Հենց այդ ամենախոշոր կողրերից էլ նա ընտրում է սերմացուն։ Կողրերը լավ չորացնելուց հետո ամբողջ ձմեռը պահում է չոր ու օդափոխանց պահեստներում։ Հայտնի է, որ կողրերի հիմքի և ծայրի հատիկները համեմատաբար թույլ են զարգացած և տալիս են թույլ ու վտիտ ծիլեր։ Այդ հատիկներից առաջացած բույսերը վատ են աճում ու ցածր բերք են տալիս։ Սերմի համար պետք է վերցնել միայն կողրի միջին մասի հատիկները։ Ձմռվա ընթացքում 3—4 անգամ որոշում են սերմերի ծլունակությունը։ Կողրերից հատիկի անջատումը պետք է կատարել գարնանը, ցանքից անմիջապես առաջ։ Ցանքից առաջ սերմացուն անհրաժեշտ է ախտահանել։ Ախտահանման համար պետք է վերցնել յուրաքանչյուր մեկ տոննա եգիպտացորենի սերմի համար մեկ կիլոգրամ գրանոզան։



Եգիպտացորենը ջերմասեր բույս է, նրա սերմերը համահավասար են ծլում այն ժամանակ, երբ 10 սմ. խորությամբ ունեցող հողի մեջ ջերմությունը հասնում է 10—12 աստիճանի։ Վաղ ցանքի դեպքում սերմերը չեն ծլում, այլ նեխվում են։ Սովորաբար պետք է եգիպտացորենի ցանքը կատարել դաշտային աշխատանքները սկսելուց 25—30 օր հետո։

Եգիպտացորենի բերքի բարձրացման գործում վճռական նշանակություն ունի ցանքի ձևը և հեկտարի լիարժեքությունը։

Վերջին տարիներում առաջավորների փորձը միանգամայն ապացուցեց եգիպտացորենի քառակուսի-բնային ցանքի առավելությունները։

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը որոշել է բարձր բերք ստանալու համար եգիպտացորենի ցանքը կատարել քառակուսի-բնային եղանակով՝ բնում թողնելով, որպես կանոն, երկուական ցողուն։ Եգիպտացորենի քառակուսի-բնային ցանքի պայմաններում միջշարքային տարածությունը թողնելով 70 սմ. և յուրաքանչյուր բնում երկուական բույս, մեկ հեկտարի վրա կստացվի 40—41 հազար ցողուն։ Բարձր ագրոտեխնիկայի կիրառման դեպքում (հողի հիմնական ու նախացանքային մշակում, սերմը ճիշտ ձևով նախա-

պատրաստելը, ցանքը ճիշտ ժամանակին կատարելը, ցանքերի լավորակ խնամքը և այլն) եգիպտացորենը տալիս է մեծ աճ։ Այս դեպքում յուրաքանչյուր բույսի վերերկրյա մասսան կանաչ վիճակում երկու կիլոգրամից ավելի քաշ է ունենում։ Եգիպտացորենի յուրաքանչյուր հեկտարի վրա 40—41 հազար բույս աճեցնելու պայմաններում, եթե յուրաքանչյուր բույսի կանաչ մասսան ունենա անգամ մեկ կիլոգրամ քաշ, հեկտարից կստացվի 400 ցենտներ կանաչ մասսա, իսկ երբ յուրաքանչյուր բույսի կանաչ մասսայի միջին քաշը լինի մեկ ու կես կիլոգրամ, ապա կստացվի մոտ 600 ցենտներ բերք։

Եգիպտացորենի քառակուսի-բնային ցանքի դեպքում ոչ միայն բարձր բերք է ստացվում, այլև հնարավոր է լինում ցանքերի մշակության և խնամքի աշխատանքներն ամբողջապես մեքենայացնել։ Այն վայրերում, ուր եգիպտացորենը ցանվում է թեքությունների վրա, անհրաժեշտ է ցանքը կատարել շարքերով։ Այդ պայմաններում միջշարքային տարածությունը պետք է հավասարապես 70 սմ. լինի, իսկ միջբնային տարածությունը՝ 50 սմ., յուրաքանչյուր բնում թողնելով երկուական բույս։ Ցանքի այսպիսի ձևի դեպքում յուրաքանչյուր հեկտարի վրա հնարավոր է աճեցնել 56—57 հազար բույս։ Յուրա-



քանչյուր հեկտարում պետք է ցանել 30—45 կիլոգրամ սերմ։

Եգիպտացորենի բարձր բերքի վարպետները մեծ ուշադրություն են դարձնում նոսրացման վրա, այդ աշխատանքը կատարում են, երբ բույսերը ունենում են 4—5 տերև, թողնելով յուրաքանչյուր բնում երկուական բույս։

Եգիպտացորենի դաշտում միջշարքային տարածությունները անհրաժեշտ է մշակել։ Առաջին փխրեցումը պետք է կատարել, երբ առաջացել են 4—5 տերև, երկրորդը՝ երբ բույսերի բարձրությունը հասել է 20 սմ.-ի, երբ բույսերի բարձրությունը հասնում է 60 սմ.-ի, պետք է կատարել երրորդ փխրեցումը, իսկ չորրորդ փխրեցումը պետք է կատարել, երբ բույսերն արձակում են հուրաններ։ Եգիպտացորենը ջրի մեծ պահանջ է զգում ծաղկման և հատիկի կազմակերպման շրջանում։

Զինված ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Հունվարյան պլենումի որոշումներով՝ մեր կոլտնտեսությունները ժամանակին ու բարձր որակով կկատարեն եգիպտացորենի մշակությունը և կստանան բարձր բերք։

---

ՌՈՒՍԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ
50-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ

# 1905 ԹՎԱԿԱՆԻ ԻՐԱԴԱՐՁՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՆԵՎԱՅԻ ՈՒՂԵԿԱԼՈՒՄ

(Բանվորական դեպուտատների Պետերբուրգի Սովետի անդամ Մ. Պ. ՆԻԿՈԼԱԵՎԻ հիշողությունները)

*Հիսուն տարի առաջ մեր երկրում տեղի ունեցավ իմպերիալիզմի դարաշրջանում առաջին ժողովրդական ռևոլյուցիան, որը Լենինի արտահայտությամբ հանդիսացավ 1917 թվականի Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի նախերգանքն ու գլխավոր փորձը։*

*Ես լավ եմ հիշում շաբաթ օրվա երեկոն — հունվարի 9-ի նախօրյակը։ Մի խումբ սոցիալ-դեմոկրատներ, որոնց թվում և ես, հավաքվել էին «Վիեննա» (Ներկայիս Բաբուշկինի անվան) զբոսայգու մոտ գտնվող թեյարանում։ Այդ օրերին Պետերբուրգի բոլշևիկների կոմիտեն մի թռուցիկ էր լույս ընծայել, որի մեջ բանվորներին պարզաբանում էր Գապոնի սարքած խաղի իմաստը։ Այն հարցերը, որ բարձրացվել էին այդ*



*թռուցիկում, մենք կրկին քննության էինք առնում։ Հավաքվածների մեջ էին Մանյա Բելովան և Ալեքսանդրովսկու գործարանի (այժմ՝ պրոլետարական շոգեքարշանորոգման գործարան) բանվոր Ֆյոդոր Արկադևը, որոնք հաջորդ օրը ընկան ցարական գնդակներից։*

*Հունվարի 9-ի առավոտյան մենք գնացինք գապոնյան բաժանմունք։ Այստեղ արդեն հավաքվել էին մոտ տասնհինգ հազար բանվորներ Սեմյաննիկովի և Ալեքսանդրովսկու գործարաններից, Պալի (այժմ Նոգինի անվան) ֆաբրիկայից, Տորնտոնի ֆաբրիկայից (այժմ՝ Թելմանի Մահուդի կոմբինատ) և Նևայի ուղեկալի մյուս ձեռնարկություններից։ Շլիսելբուրգի անցուղիները (այժմ՝ օբուխովյան պաշտպանության պողոտա) ողողված էին դանդաղորեն առաջ շարժվող մարդկանցով։*

*Հրշեջների շենքի մոտ, երթի առաջ, դուրս եկան կազակները։*

*— Ե՛տ դարձ,— բղավեց մի սպա։*

*Ամբոխի մեջ իրարանցում ընկավ։ Այդ պահին կազակները համազարկեր տվեցին օդում։ Բանվորները սկսեցին ջարդել Նևայի կողմից փողոցի երկարությամբ ձգվող պարիսպներն ու իրենց նետել սառցի վրա։ Գետի աջ ափով ժողովուրդը առանձին խմբե-*

րով շարունակում էր առաջ գնալ դեպի պալատ։ Ոմանք ափով գնացին հասան Տրոիցկու կամուրջը (այժմ Կիրովյան կամուրջ)։ Մի այլ խումբ բանվորներ, որոնց մեջ էի ես, նորից անցան Նևան և դուրս եկան Նևայի պողոտան։ Ամենուրեք զինվորներ էին, որոնք զենքերը բուրգաձև իրար կըպցրած տաքանում էին խարույկների մոտ։

Հեծյալ գորոդովոյների շղթան ճեղքելանցնելով, մենք դուրս եկանք հասանք մինչև Ալեքսանդրովսկու զբոսայգու (այժմ՝ Ա. Մ. Գորկու անվան զբոսայգի) ցանկապատը՝ Պալատի առջևի հրապարակի մոտ։ Այստեղ զինվորներն իրար կպած՝ մի պատնեշ էին կազմում։

Սպան բղավում էր երթի մասնակիցների վրա և հրամայում ցրվել։ Մեզնից ոմանք ցանկապատի վրայով ներս մտան Ալեքսանդրովսկու զբոսայգին։ Հանկարծ փող փչեցին և հրացաններով համազարկ տվին։ Ես ընկա փախչողների ոտքերի տակ։ Իսկ երբ վեր կացա, նորից ճարճատում էին գնդակները։ Իմ կողքին արնաշաղախ եղավ մի կին, որի ստորին ծնոտը փշրվել էր գնդակից։ Աչքերը չռած, գետին էր փռվել Մանյա Բելովան։ Գնդակը կպել էր նրա ուղիղ ճակատին, Ֆյոդոր Արկադևի կուրծքը ծակեցին երեք գնդակ։ Ես թեթև վիրավորվեցի գլխի-



ցըս։ Բանվորները մի կողմ էին քաշում սպանվածներին և օգնում վիրավորներին։ Մոյկայի վրա գտնվող վիրակապման կայանում ինձ մոտեցավ մի բժշկական կին աշխատող և ականջիս ասաց, որ գրանցման ժամանակ ես չասեմ իմ իսկական հասցեն, որովհետև հետագայում կարող են ինձ բանտարկել։

Երբ ես վիրակապական կայանից դուրս եկա, Նևայի պողոտայում մարդիկ սկսեցին ինձնից հարցնել գնդակոծության մանրամասնությունները։ Ես նրանց պատմում էի անզեն ժողովրդի նկատմամբ ցարի վայրագ դաժանության մասին, բայց այդ պահին երևացին հեծյալ գորոդովոյներ և ցրեցին ամբոխին։ Իսկ ինձ սպառնացին բանտարկությամբ։

Ես Նևայի ուղեկալ վերադարձա միայն հաջորդ օրը՝ առավոտյան։ Հարազատներս և ծանոթներս կարծում էին, որ ես սպանված եմ։

Կառավարությունը ձգտում էր թաքցնել իր այդ ոճրագործության հետքերը։ Երեկոյան զորքերը հապճեպորեն հավաքում էին սպանվածների դիակները և պարկերի մեջ լցրած տանում ամենահեռավոր Պրեոբրաժենսկու գերեզմանատուն։

Հունվարի 9-ի իրադարձությունները բան-

վորներին սովորեցրին, որ դասակարգային հակասությունները լուծվում են ոչ թե խնդրագրերով, այլ զենքի ուժով։

«Արյունոտ կիրակին» ամբողջ երկրում մասսայական ռևոլյուցիոն շարժման սկիզբ դրեց։ Պետերբուրգի բանվորները այդ արյունալի սպանդին պատասխանեցին ընդհանուր գործադուլով, որն ավարտվեց հունվարի 17-ին, իսկ խոշորագույն գործարանների՝ Պուտիլովի, Բալթիկայի, Օբուխովի և այլ ձեռնարկությունների բանվորները գործադուլ էին անում դեռ փետրվարին էլ։

Հունվարի 9-ից հետո Պետերբուրգի գեներալ-նահանգապետ նշանակվեց գեներալ-մայոր Տրեպովը։ Նա որոշեց կազմակերպել և ցարի մոտ ուղարկել «բանվորական պատգամավորություն»։ Ոստիկանությունը գործարաններից ու ֆաբրիկաներից հավաքագրեց ցարին նվիրված 34 բանվոր և ուղարկեց Ցարսկոյե Սելո։ Նիկոլայ 2-րդը իր շքախմբով դուրս եկավ և առանց նրանց նայելու մի թուղթ կարդաց, թե ինքը «ներում է» բանվորներին՝ նրանց «մեղքերի» համար։ Բոլոր գործարաններում բանվորները մեծ նողկանքով դիմավորեցին ցարի մոտ պատգամավորություն ուղարկելու և նրա «ներողամիտ» լինելու մասին լուրը։

Պետերբուրգի բանվորների կարիքները



քննության առնելու համար ցարական կառավարությունը ստիպված եղավ ստեղծել Շիդլովսկու հանձնաժողովը։ Բայց դա էլ մի տրյուկ էր, որ նպատակ ուներ բանվորներին ետ պահել ռևոլյուցիոն պայքարից և խուսափել բոլշևիկների մերկացումներից։

Մարտի 24-ին Ալեքսանդրովսկի և Մուրզինկի բանվորները Պյոտրի և Պավելի եկեղեցում կազմակերպեցին արյունոտ կիրակիի զոհերի հոգեհանգիստ։ Իսկ հոգեհանգստից հետո բոլշևիկները եկեղեցու մոտ անցկացրին միտինգ, որտեղ մեկ անգամ ևս մերկացրին դահիճ-ցարի և նրա կառավարության նողկալի գործողությունները։ Այդ ժամանակ Պալի ֆաբրիկայից փախած ջուլհակները հայտնեցին, որ իրենց ֆաբրիկայի վարպետ Կոլյանսկին սպանեց բանվոր Ֆիլիպ Ալեքսեևին։ Բոլորը խիստ ազդվեցին այդ լուրից։ Հետևյալ օրը Ալեքսեևի թաղումը վերածվեց մի հզոր ցույցի, որին չկարողացան խանգարել մինչև անգամ կազակներն ու ոստիկանությունը։

Մեծ ցույց տեղի ունեցավ նաև մայիսի 1-ին, Պրեոբրաժենսկու գերեզմանատանը, որտեղ հավաքվել էին Պետերբուրգի բոլոր գործարանների ներկայացուցիչները, որպեսզի հարգեն հունվարի 9-ի զոհերի հիշատակը։

Նևայի ուղեկալի գործարաններում այդ ժամանակ գործադուլները սովորական երևույթ դարձան։ Բանվորները պահանջում էին բարելավել իրենց դրությունը, իրենց ատելի վարպետներին ու պետերին դնում էին կեղտոտ սայլակների վրա ու դուրս վռնդում ֆաբրիկաներից ու գործարաններից։ Հիշում եմ, թե ինչպես մայիսի վերջին, երբ հայտնի դարձավ Ցուսիմայի կատաստրոֆը, գումարվեց Օբուխովի գործարանի բանվորների մեծ միտինգ։ Միտինգում ընդունվեց մի բանաձև, որով կառավարությունից պահանջում էին անհապաղ վերջ տալ խայտառակ պատերազմին։

ՌՍԴԲՊ 3-րդ համագումարից հետո Վ. Ի. Լենինի պնդմամբ ՌՍԴԲՊ Պետերբուրգի կոմիտեին կից ստեղծվեց մարտական բաժին, որն զբաղվում էր բանվորներին զինելու գործով։ Ես գործարանային մարտական ջոկատի շարքային անդամ էի։

Հուլիսի 9-ին Օբուխովի գործարանի բանվորները գործադուլ արին և ցույց կազմակերպեցին։ Ցույցը կազակների հարձակումներից պաշտպանում էին բանվոր բոլշևիկները։ Նույն օրը, նշելով «Արյունոտ կիրակի»-ի կիսամյակը, Պետերբուրգում գործադուլ արեցին նաև մյուս գործարանները, ընդամենը վաթսուն հազարից ավելի մարդ։



Հուլիս-սեպտեմբերին մուրզինսկի անտառում գիշեր-ցերեկ տեղի էին ունենում բանվորական ժողովներ։ Բանվորները հավաքվում էին Նևայի ուղեկալի նաև այլ խուլ անկյուններում։ Իվանովո-Վոզնեսենսկի ջուլհակների գործադուլը, Լոձի ապստամբությունը, վերջապես «Պոտյոմկին» զրահանավի ապստամբությունը՝ այս բոլոր իրադարձությունները քննության էին առնվում բանվորական ժողովներում։

Հոկտեմբերը բուռն իրադարձություններով սկսվեց Նևայի ուղեկալում։ Մոսկվայի պրոլետարիատի սեպտեմբերյան քաղաքական գործադուլը լարված դրություն ստեղծեց ամբողջ Պետերբուրգում, իսկ հոկտեմբերի 5-ին գործադուլ սկսվեց մեր գործարանում, ինչպես նաև քաղաքի մյուս գործարաններում։ Հոկտեմբերի 17-ին գործադուլն ընդգրկեց ամբողջ Ռուսաստանը։

Գործադուլի սկզբում բանվորներն աշխատում էին ամուր կապ ստեղծել միմյանց միջև։ Հոկտեմբերի 10-ին գործարանների պատգամավորները հավաքվեցին Տեխնոլոգիական ինստիտուտում։ Այստեղ որոշվեց ստեղծել ընդհանուր բանվորական կոմիտե՝ պրոլետարիատի քաղաքական և տնտեսական պայքարը ղեկավարելու համար։ Ժողովը որոշեց այդ մասին հայտնել բոլոր գոր-

ծարաններին ու ֆաբրիկաններին և առաջարկել նրանց ամենակարճ ժամանակամիջոցում ընտրելու մեկական դեպուտատ՝ յուրաքանչյուր հինգ հարյուր մարդուց: Այդպես ծնունդ առան բանվորական դեպուտատների Սովետները:

Ես Պետերբուրգի Սովետում ընտրված դեպուտատներից մեկն էի՝ Օբուխովի գործարանից: Այն ժամանակ իմ մականունն էր «Պետուշկով», այդ անվամբ էլ ես աշխատում էի Սովետում: Պետերբուրգի Սովետը որոշեց հրատարակել իր տպագիր օրգանը: Այն զինված ջոկատը, որի մեջ էի և ես, բռնագրավեց «Նովոյե վրեմյա» թերթի տպարանը: Այստեղ սկսեցին տպագրել «Իզվեստիա Սովետա Ռաբոչիխ դեպուտատով» թերթը:

Բանվոր դասակարգի համար դաժան դըպրոց հանդիսացավ 1905 թվականը: Շատ բան հասկացա այն ժամանակ և ես. ինձ բախտ վիճակվեց մասնակցել նաև Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիային: Իսկ այժմ, մեր ժողովրդական իշխանության օրոք այնքան բերկրալի է կյանքը, որ ես, չնայած պատկառելի հասակիս, դեռ երիտասարդ եմ զգում ինձ:

Գրի առավ ՅՈՒ. ԼԻՍԻՑԻՆԸ

---

ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

# ԱԳԻՏԿՈԼԵԿՏԻՎԸ ԲԱՐՁՐ ԲԵՐՔԻ ՀԱՄԱՐ ՄՂՎՈՂ ՊԱՅՔԱՐՈՒՄ

Արտաշատի շրջանի Անաստասավանի «Փարիզյան կոմունայի» անվան կոլտնտեսության ագիտկոլեկտիվի ղեկավար Գ. ԹԱԴԵՎՈՍՅԱՆԻ պատմածը

Մեր կոլտնտեսությունը տարեցտարի ամրապնդվում է թե՛ տնտեսապես և թե՛ կազմակերպչորեն: Ամեն տարի մեր կոլտնտեսականները բամբակի, խաղողի և մշակվող մյուս կուլտուրաների բարձր բերք են ստանում, որի շնորհիվ անընդհատ ավելանում են կոլտնտեսության եկամուտները, կոլտնտեսականներն ավելի շատ դրամ և գյուղատնտեսական մթերքներ են ստանում իրենց աշխօրերի դիմաց: Անցյալ տարի մեր կոլտնտեսության համախառն եկամուտը կազմեց մոտ 12 միլիոն ռուբլի, 1946 թվականի 2 միլիոն 767 հազար ռուբլու փոխարեն, իսկ յուրաքանչյուր աշխօրի արժեքը կազմեց 40 ռուբլի: Կոլտնտեսականներից շատերն իրենց վաստակած աշխօրերի դիմաց

ստացան 20-ից մինչև 43 հազար ռուբլի դրամ, մեկից մինչև երկու տոննա հացահատիկ, երեքից մինչև յոթը տոննա խաղող, 200-ից մինչև 600 կիլոգրամ շաքիր և այլ մթերքներ։ Այդ բոլորից բացի, 1954 թվականի եկամուտներից կոլտնտեսության անբաժանելի ֆոնդին հատկացվեց 1 միլիոն 257 հազար 210 ռուբլի։ Անցյալ տարի շահագործման հանձնվեց մեքենայացված և էլեկտրիֆիկացված 3 կովանոց և երկու հորթանոց։ Անցյալ տարի կառուցվեց և շահագործման հանձնվեց 4 պահեստ, մեկ ձիանոց, 3 օժանդակ շենք, անասնաբուժարան, բամբակի չորանոց և արտադրական այլ օբյեկտներ։

Մեր կոլտնտեսության հաջողությունների մասին շատ բան կարելի է ասել, բայց ես ցանկանում եմ պատմել այն մասին, թե ինչ է արել ագիտկոլեկտիվը, ինչ են արել ագիտատորները այդ հաջողությունների ձեռք բերման գործում։

Ամենից առաջ պարտկազմակերպությունը կոլտնտեսային աշխատավորների մեջ կատարվող քաղաքական ագիտացիան ամբողջությամբ իսպաս է դրել գյուղատնտեսության զարգացման վերաբերյալ պարտիայի ու կառավարության կողմից առա-



ջադրվող խնդիրները պատվով կատարելու գործին։

Ագիտկոլեկտիվը գյուղատնտեսական տարվա սկզբից սովորաբար իր աշխատանքը սկսում է նրանով, որ կոլտնտեսության բրիգադներում, օղակներում և անասնապահական ֆերմաներում լայնորեն ծավալում է սոցիալիստական մրցությունը։ Մեզ մոտ յուրաքանչյուր ագիտատոր հանդես է գալիս որպես սոցիալիստական մրցության կազմակերպիչ։

Հենց այդպես սկսեցինք մեր ագիտկոլեկտիվի աշխատանքն այս տարի։ Ագիտատորների օգնությամբ բրիգադները-բրիգադների, օղակները-օղակների և կոլտնտեսականները միմյանց հետ մտան սոցիալիստական մրցության մեջ՝ ստանձնելով կոնկրետ պարտավորություններ։ Այդ կապակցությամբ ագիտկոլեկտիվը պարբերաբար նիստեր է ունենում, ուր ագիտատորները փորձի փոխանակման կարգով պատմում են բարձր բերքի և բարձր մթերատվության համար ծավալված սոցմրցության արդյունքների մասին։ Օրինակ, վերջերս ագիտկոլեկտիվի հերթական նիստում ագիտատորներ Գ. Ստեփանյանը և Կ. Տրդատյանը պատմեցին գարնան գյուղատնտեսական աշխատանք-

ները սեղմ ժամկետներում և բարձր ցուցանիշներով կատարելու համար ծավալված մրցության ընթացքի մասին։ Ագիտատոր Գ. Ստեփանյանը անցյալ տարվա իր կատարած աշխատանքից կոնկրետ օրինակներ բերեց, թե ինչպես մրցությունը դառնում է ավելի արդյունավետ, երբ բամբակի, խաղողի, բանջարաբոստանային, հացահատիկային և բոլոր մյուս կուլտուրաների մշակության ու բերքահավաքի աշխատանքներում արմատավորվում է մանր խմբային և անհատական գործավարձը։ Դա հնարավորություն է տալիս լրացուցիչ վարձատրություն տալ կոլտնտեսականներին, մի բան, որ լավագույն միջոց է կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու համար։

Ավարտելով 1954 թվականի գյուղատնտեսական տարին, սոցմրցության բազմաթիվ առաջավորներ լավ աշխատանքի համար ստացան լրացուցիչ վարձատրություն։ Մեր ագիտատորները օգտագործելով այդ փաստը, կոլտնտեսականներին գործնականում ցույց տվեցին, որ կոլտնտեսությանը ավելի շատ եկամուտ բերող օղակները վարձատրվում են ավելի շատ, հետևաբար, յուրաքանչյուր կոլտնտեսական պետք է ձգտի



բարձրացնել մշակվող կուլտուրաների բերքատվությունը։

Ագիտկոլեկտիվը լուրջ ուշադրություն է դարձնում կոլտնտեսային աշխատանքի առաջավորների փորձը մասսայականացնելու և արմատավորելու վրա։ Ագիտատորները հաճախակի կազմակերպում են ունկնդիրների հանդիպումներ Սոցիալիստական Աշխատանքի Հերոսների և Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի մասնակիցների ու թեկնածուների հետ։ Այսպես, օրինակ, ագիտատորներ Ժ. Սահակյանը, Մ. Աբրահամյանը և մյուսներն իրենց բրիգադաներում անցյալ տարի մի քանի անգամ կազմակերպեցին Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Անդրանիկ Մուրադյանի հանդիպումը կոլտնտեսականների հետ, որը հանգամանորեն պատմեց իր աշխատանքի փորձի մասին։

Ագիտացիան ավելի նպատակասլաց դարձնելու նպատակով մեզ մոտ խոշոր ուշադրություն է դարձվում գյուղատնտեսության հետագա զարգացման վերաբերյալ պարտիայի ու կառավարության որոշումները կոլտնտեսականներին պարզաբանելու, ինչպես նաև սոցիալիստական գյուղատնտեսության նվաճումները նրանց մեջ մասսա-

յականացնելու վրա։ Այդ գործում մեք լայնորեն օգտագործում ենք քաղաքական ագիտացիայի բոլոր ձևերն ու միջոցները։ Բացի ունկնդիրների հետ զրույցներ, թերթերի և ամսագրերի ընթերցանություն ունենալուց, նրանց հետ միասին մրցության արդյունքները քննարկելուց, գյուղատնտեսության առաջավորների հանդիպումներ կազմակերպելուց, մենք լայնորեն օգտագործում ենք նաև ցուցադրական ագիտացիան։ Կոլտնտեսության ակումբում երեք սենյակներ, ինչպես նաև առավել աչքի ընկնող տեղերն օգտագործվում են ցուցադրական ագիտացիայի համար։ Հենց վերջերս կազմակերպեցինք ցուցադրական ագիտացիոն նյութերի հատուկ անկյուն՝ նվիրված ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումի որոշումներին։ Բացի դրանից, ունենք հատուկ ստենդ՝ նվիրված ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի որոշումներին։

Դիտելով ցուցադրական ագիտացիոն նյութերը՝ պլակատները, լոզունգները, ֆոտոնկարները, դիագրամաները, կոլտնտեսականները պարզ պատկերացում են ունենում այն վիթխարի աշխատանքի մասին, որ այժմ կատարվում է մեր երկրում գյուղատնտեսության և անասնաբուծության հետա-



գա զարգացման համար։ Միաժամանակ ցուցադրական ագիտացիայի միջոցով կոլտնտեսականները տեղյակ են լինում կոլտնտեսության առջև դրված կոնկրետ խնդիրներին։ Օրինակ, մի մեծ ստենդ ցույց է տալիս, թե ինչի համար է պայքարում մեր կոլտնտեսությունն այս տարի։ Այստեղ գեղարվեստորեն ձևավորված պլակատներից ամեն մի դիտող անմիջապես կարող է իմանալ, որ այս տարի կոլտնտեսությունը պայքարում է յուրաքանչյուր հեկտարից, անցյալ տարվա 24 ցենտների փոխարեն 35 ցենտներ բամբակ, 320 ցենտների փոխարեն 400 ցենտներ բանջարեղեն, 125 ցենտների փոխարեն 130 ցենտներ խաղող ստանալու համար։

Որպեսզի ցուցադրական ագիտացիան լինի ավելի արդյունավետ, մենք ագիտկոլեկտիվի նիստերում հաճախակի քննության ենք առնում այն հարցը, թե ո՞ր ագիտատորը իր զրույցի ժամանակ ինչպե՞ս է օգտագործում ցուցադրական ագիտացիոն նյութերը։ Այնուհետև, այդ կապակցությամբ, ագիտատորներին տրվում է համապատասխան հրահանգավորում։ Մեր ագիտկոլեկտիվի աշխատանքի փորձը նկատի ունենալով, ես

պետք է ասել, որ աշխատավորների հետ կատարվող քաղաքական ագիտացիան ավելի հետաքրքիր ու բովանդակալից դարձնելու գործին մեծ չափով նպաստում է նաև այն հանգամանքը, երբ պարբերաբար ստուգվում է, թե ինչպես է անցկացվում զրույցը։ Չէ՞ որ լինում են այնպիսի ագիտատորներ, որոնք լրջորեն չեն նախապատրաստվում ագիտացիոն զրույցին և ունկնդիրները դժգոհ են մնում նրանցից։ Այդ անախորժ երևույթը կանխելու նպատակով պարտբյուրոյի հանձնարարությամբ կազմակերպում ենք ագիտացիոն զրույցի ունկնդրում։ Նկատված թերությունների մասին տեղյակ ենք պահում տվյալ ագիտատորին և օգնում արագ կերպով վերացնելու թերությունները։

Ագիտացիոն զրույցները քաղաքական բարձր մակարդակով անցկացնելու գործում մեծ դեր են խաղում ագիտատորների սեմինար պարապմունքները։ Մեզ մոտ ամիսը 2 անգամ ագիտատորների համար սեմինար պարապմունք է կազմակերպվում։ Սեմինարներում ագիտատորները մեթոդական օգնություն են ստանում, թե ինչպես կոլտնտեսականներին պարզաբանել հանձնարարված թեման։ Անցյալ ամսում, օրինակ, 2 անգամ



սեմինար պարապմունք տեղի ունեցավ, որ ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումի որոշումը կոլտնտեսականներին պարզաբանելու վերաբերյալ լսվեց ընկ. Մ. Մովսիսյանի հրահանգչական զեկուցումը։ Մեկ տասնօրյակից հետո սեմինարում փորձի փոխանակման կարգով №№ 14, 10, 12 բրիգադների ագիտատորները պատմեցին, թե իրենք ինչպես են կոլտնտեսականներին պարզաբանել ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումի որոշումները։

Այսպիսով, ինչպես տեսնում ենք, ագիտկոլեկտիվի լավ աշխատանքից է կախված ագիտացիոն զրույցի հաջողությունը, նպատակասլաց, հետաքրքիր ու բովանդակալից լինելը։ Այդ նկատի ունենալով, պարտկազմակերպությունը ամեն կերպ ձգտում է ուժեղացնել քաղաքական-բացատրական աշխատանքը կոլտնտեսականների մեջ, հիշելով մեծ Լենինի այն խոսքերը, որ պետությունը ուժեղ է մասսաների գիտակցականությամբ։ Նա ուժեղ է այն ժամանակ, երբ մասսաները ամեն ինչ գիտեն, ամեն ինչի մասին կարող են դատել և ամեն ինչի գնում են գիտակցորեն։

---

# ԱՐՄԱՏԱՎՈՐՎՈՒՄ Է ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՓՈՐՁԸ

**Գ. Մովսիսյան**

*Երևանի Կանազ գործարանը արդեն երրորդ տարին է, ինչ սոցիալիստական մրցության մեջ մտնելով ՌՍՖՍՌ-ի համապատասխան գործարանի հետ, հաղթող է դուրս գալիս այդ մրցությունից։ Հատկապես բարձր ցուցանիշների է հասել 3—1 ցեխը, որը առաջատար նշանակություն ունի գործարանում։*

*Գործարանի արտադրական բարձր ցուցանիշների հասնելու գաղտնիքը ամենից առաջ բացատրվում է ռացիոնալիզատորական ու նորարարական բազմաթիվ առաջարկությունների ներդրմամբ։ Բավական է ասել, որ միայն վերջին երկու տարվա ընթացքում գործարանի տեխնիկական խորհուրդը ստացել է 220 ռացիոնալիզատորական ու նորարարական առաջարկություն, որից արտադրության մեջ արդեն արմատավորվել է 121-ը։ Այդ առաջարկությունների ներդրումից գործարանի*



*3—1 ցեխի առաջին և երկրորդ կորպուսները միայն 1954 թվականի ընթացքում խնայել են 167 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, հսկայական չափերի հասնող հումք և երկրին տվել են մի քանի միլիոն ռուբլու արտապլանային արտադրանք։*

*Ռացիոնալիզատորական ու նորարարական առաջարկությունները արմատավորելու գործին ամենօրյա անհրաժեշտ ղեկավարություն և օգնություն են ցույց տալիս գործարանի դիրեկցիան և պարտբյուրոն։ Ընդամենը երկու ամիս առաջ էր, ինչ պարտբյուրոն իր նիստերից մեկը նվիրելով ռացիոնալիզատորական ու նորարարական առաջարկությունների ստացման ու ներդրման հարցերին, վեր հանեց տեխնիկական խորհրդի աշխատանքում տեղ գտած թերությունները և նշեց դրանք վերացնելու կոնկրետ միջոցառումները։*

*Արմատավորվող նոր առաջարկությունները բանվորների մեջ պրոպագանդելու գործում իրենց հերթին մեծ աշխատանք են կատարում նաև գործարանի ցեխային, հերթափոխային և բրիգադային ագիտատորները։ Առանձնապես խրախուսելի է 3—1 ցեխից ագիտատորներ՝ Ա. Շահնազարյանի և Խ. Փիլթակյանի, անոդային տնտեսությունից՝ Շ. Խաչատրյանի և Շ. Սարգսյանի լավ աշխատանքը։*

Նրանցից յուրաքանչյուրը իր ագիտացիոն զրույցի ընթացքում հաճախակի անդրադառնում է առաջավորների փորձը արտադրության մեջ արմատավորելու հարցերին։ Այսպես, օրինակ, ագիտատոր Խաչիկ Փիլթակյանը, որը աշխատում է էլեկտրալիզի ցեխի հերթափոխության պետ, վերջերս այդ թեմային նվիրված իր զրույցում ասաց.

— Պարտիան և կառավարությունը իրենց վերջին որոշումներում մեծ տեղ հատկացրին արդյունաբերության բոլոր ճյուղերում շեշտակի վերելք ստեղծելուն։ Իսկ այդ նպատակին հասնելու համար խոշոր դեր են խաղալու տեխնիկական պրոցեսների մեջ ներդրվող կատարելագործումները։ Ապա կանգ առնելով գործարանի ձեռք բերած արտադրական հաջողությունների վրա, ագիտատորը նշում է նաև այն մարդկանց անունները, որոնք իրենց ռացիոնալիզատորական ու նորարարական առաջարկություններով նպաստել են պլանների կատարմանն ու գերակատարմանը և տվել են սահմանված քանակից ավելի շատ արտադրանք։

— Դուք, բոլորդ, լավ եք ճանաչում Սարգիս Ավագյանին,— համոզիչ տոնով բացատրում է ագիտատորը,— նա մեզ մոտ աշխատում է գործարանը շահագործման հանձ-



նելու օրից։ Նա էլ մեզ նման շարքային աշխատող է։ Սակայն նա գործնականում ցույց տվեց, որ կարելի է հասնել ավելի բարձր ցուցանիշների։ Երբ արտադրության մեջ ներդրվեց նրա նորարարական առաջարկությունը, գործարանում խնայվեց մեծ քանակությամբ թանկարժեք մետաղ։ Այդ նորարարության միջոցով նույնքան էլեկտրաէներգիա ծախսելու դեպքում զգալիորեն ավելացավ թողարկվող արտադրանքը և բարձրացավ ստացվող մետաղի որակը։

Ագիտատոր ընկ. Փիլթակյանը, որը նախորոք լավ էր պատրաստվել այդ զրույցի անցկացմանը, կենդանի օրինակներով ցույց տվեց, թե ինչպես նորարար Ավագյանի առաջարկությամբ աշխատող յուրաքանչյուր ագրեգատ, տարեցտարի ավելացնում է արտադրական կարողությունը։

Կանգ առնելով հումքի խնայողության վրա, ընկ. Փիլթակյանը բերում է ռացիոնալիզատոր Ա. Սմբատյանի առաջարկությունը, որի ներդրմամբ ցեխը 1954 թվականի ընթացքում տնտեսել է 22.600 ռուբլի, իսկ ավագ ինժեներ Ա. Սաֆարյանի ռացիոնալիզատորական առաջարկի կիրառումով տնտեսվել է 15 տոննա թանկարժեք հումք։

Ագիտատորի ուշադրությունից չեն վրիպում նաև հերթափոխությունում դեռևս գոյություն ունեցող այն թերությունները, որոնք խոչընդոտ են հանդիսանում արտադրության հետագա վերելքին։ Այդ կապակցությամբ, հրավիրելով ունկնդիրների ուշադրությունը, նա հատուկ սրությամբ քննադատում է գործում թերացողներին, որոնց վատ աշխատանքը պատճառ է դառնում առանձին բրիգադաների կողմից օրվա պլանների թերակատարմանը։

Իր ագիտացիոն զրույցը ավելի ներգործուն ու համոզիչ դարձնելու նպատակով, առժամանակ ընդհատելով իր ասելիքը, նա իր հերթափոխի բանվորներին դուրս բերելով սենյակից, հրավիրում է նրանց այն ագրեգատների մոտ, որոնց սպասարկողները անցած օրը լրիվ չէին կատարել իրենց առաջադրանքները։ Ագիտացիոն փորձը զուգակցելով պրակտիկ աշխատանքի հետ, ընկ. Փիլթակյանը ամենայն մանրամասնությամբ վերլուծման է ենթարկում ու բացահայտում առանձին ընկերների կողմից պլանների թերակատարում տալու պատճառները, ապա պրակտիկ փորձով ցույց է տալիս դրանց վերացման մեթոդներն ու եղանակները։



— Այս բոլորից հետո,— ավարտելով իր զրույցը, ասում է ագիտատորը,— ամենից առաջ անհրաժեշտ է վերացնել թերությունները և միաժամանակ հանդես գալ ռացիոնալիզատորական ու նորարարական համարձակ առաջարկություններով։ Այդ առաջարկությունները արտադրության մեջ արմատավորելով, մենք կհասնենք մեր առջև դրված խնդիրների կատարմանը և պատվով դուրս կգանք հնգամյակը չորս տարում կատարելու համար ծավալված սոցիալիստական մրցությունից։

---

# ՀՈԳԱՏԱՐՈՒԹՅՈՒՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՀԱՆԳՍՏԻ ՈՒ ԱՌՈՂՋՈՒԹՅԱՆ ՆԿԱՏՄԱՄԲ

(Թվեր և փաստեր)

*Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը ամենօրյա հոգատարություն են ցուցաբերում աշխատավորության առողջությունը պահպանելու և նրա կուլտուրական հանգիստը կազմակերպելու ուղղությամբ։ Դրա լավագույն արտահայտությունն է պետության կողմից ամեն տարի բազմաթիվ սանատորիաների և հանգստյան տների, առողջարանների ու բուժ-հիմնարկների ցանցի ընդարձակումը։*

✪ *Մինչև 1954 թվականի դեկտեմբերի մեկը Հայկական ՍՍՌ սանատորիաների և հանգստյան տների ուղեգրեր են ստացել 12 հազար 138 բանվոր, ծառայող և կոլտնտեսական։ Երեխաներով մայրերից 800 հոգի հանգստացել են Ծաղկաձորի մոր և մանկան հանգստյան տանը։*

✪ *Սովետական Հայաստանի աշխատավորները հանգստանում ու բուժվում են Սոչիի, Գագրիի, Յալթայի, Պյատիգորսկի և Սովետական Միության լավագույն սանատորիաներում։ Հազարավոր բանվոր-ծառայողներ ամեն տարի հանգստանում ու բուժվում են*



*նաև ռեսպուբլիկայի սանատորիաներում և հանգստյան տներում, ինչպես, օրինակ, «Ջերմուկ»-ի, Կիրովականի, Դիլիջանի, Արզնիի սանատորիաներում։*

✪ *1954 թվականի ընթացքում միայն գունավոր մետալուրգիայի բանվորների պրոֆմիության ռեսպուբլիկական կոմիտեն, միության անդամների և նրանց երեխաների սանատորիական բուժումն ու հանգիստը կազմակերպելու նպատակով, ծախսել է ավելի քան 1 միլիոն 400 հազար ռուբլի։ Պրոֆմիության 390-ից ավելի անդամներ ստացիոնար բուժում են ստացել Կիսլովոդսկի, Ցխալտուբոյի, Ժելեզնովոդսկի, Էսենտուկի, Սոչիի, Յալթայի, Միսխորի, Պյատիգորսկի, Բորժոմի, Արզնիի, Ջերմուկի, Գագրիի և այլ սանատորիաներում։*

✪ *Նույն պրոֆմիության անդամներից 765 հոգի եղել են հանգստյան տներում, իսկ ձեռնարկությունների կից գիշերային սանատորիաներում հանգստացել է 600 մարդ։ Պրոֆմիության 22 անդամներ օգտվել են տուրիստական ուղեգրերից։ Նույն պրոֆմիության անդամների 1050 երեխաներ իրենց հանգիստն անց են կացրել ամառային ճամբարներում։ «Կզլ-դաշ» սեփական հանգստյան տանը հանգստացել են հարյուրավոր հանքագործներ։*

✪ *1954 թվականի ամռանը Հայկական ՍՍՌ անտառային և թղթի արդյունաբերության աշխատողների պրոֆմիության ռեսպուբլիկական կոմիտեի ճամբարներում իրենց հանգիստն են անցկացրել Մոսկվայից, Կարելո-Ֆիննական ռեսպուբլիկայից, Լենին-*

գրադի մարզից, Արխանգելսկից, Կոմի ԱՍՍՌ-ից և այլ տեղերից եկած 150-ից ավելի երեխաներ։

✪ Անցյալ տարի Հայաստանի Շինանյութերի արդյունաբերության աշխատողների պրոֆմիության ռեսպուբլիկական կոմիտեն միության անդամների և նրանց երեխաների բուժումն ու հանգիստը կազմակերպելու համար ծախսել է 269 հազար 184 ռուբլի։

✪ 1954 թվականին Կոմունալ տնտեսության աշխատողների պրոֆմիության ռեսպուբլիկական կոմիտեի կողմից սանատորիա է ուղարկված 129 մարդ, որից 92-ը բանվոր, 37-ը՝ ինժեներա-տեխնիկական աշխատող ու ծառայող։ Հանգստյան տներում են եղել պրոֆմիության 273 անդամներ, մանկական սանատորիաներում՝ 30 երեխա, իսկ 394 երեխաների համար կազմակերպվել են ամառային ճամբարներ։

✪ Անցյալ տարի ամռանը Երևանի Կիրովի անվան գործարանի Ծաղկաձորում գտնվող հանգստյան տանը իրենց ամառային արձակուրդը անցկացրին ավելի քան 300 բանվորներ ու ինժեներա-տեխնիկական աշխատողներ և 500 երեխաներ։

✪ Էլեկտրակայանների և էլեկտրաարդյունաբերության աշխատողների պրոֆմիության ռեսպուբլիկական կոմիտեն 1954 թվականին 210 բանվորների, 240 ինժեներա-տեխնիկական աշխատողների ուղարկել է Միութենական և տեղական նշանակություն ունեցող սանատորիաներ հանգստանալու և բուժվելու։ Բացի այդ, 80 բանվոր-ծառայողներ սանատորիական ուղեգրեր



ստացել են անվճար։ 550 բանվորներ և ծառայողներ իրենց ամառային հանգիստն անց են կացրել հանգստյան տներում, 35-ը օգտվել են տուրիստական ուղեգրերից։ Պրոֆմիության անդամների 600 երեխաներ հանգստացել են պիոներական ճամբարներում։

★ Բժշկական աշխատողների պրոֆմիության Ռեսպուբլիկական կոմիտեն 1954 թվականին ավելի քան 300 բժիշկների և բուժծառայողների ուղարկել է Արզնի, Դիլիջան, Եսենտուկի, Կիսլովոդսկ, Սոչի, Ջերմուկի Մխս, Պյատիգորսկ, Ցխալտուբո, Սակի, Ախալի Աֆոնի, Գագրի, Ժելեզնովոդսկ և այլ սանատորիական վայրերը։ 540 բժշկական աշխատողներ հանգստացել են հանգստյան տներում։ Բժշկական անձնակազմի 600-ից ավելի երեխաներ մեկնել են ամառային ճամբարներ։

✪ Կուլտուրայի աշխատողների ռեսպուբլիկական կոմիտեն 1954 թվականի ընթացքում 317 աշխատողների ուղարկել է սանատորիաներ, 786 մարդու ապահովել է ռեսպուբլիկայի հանգստյան տների և 49 հոգու՝ տուրիստական ուղեգրերով։ Կուլտուրայի աշխատողների 1561 երեխաներ տարվա տարբեր ամիսներին բուժվել ու հանգստացել են մանկական սանատորիաներում և պիոներական ճամբարներում։

✪ Սպառկոոպերացիայի աշխատողների արհմիության ռեսպուբլիկական կոմիտեն անցած տարի միության անդամներից 122 հոգու սանատորիաների և հանգստյան տների ուղեգրեր տվեց։ Նրանց երեխա-

ներից ավելի քան 250 հոգի ստացան պիոներական ճամբարի ու մանկական սանատորիայի ուղեգիր։ Այդ ուղեգրերի մի մասը տրվել է անվճար։

✪ Ավտոտրանսպորտի և խճուղային ճանապարհների աշխատողների պրոֆմիության ռեսպուբլիկական կոմիտեն 1954 թվականի ընթացքում միության անդամներին և նրանց երեխաներին սանատորիաներ, հանգստյան տներ ու պիոներական ճամբարներ ուղարկելու համար ծախսել է 175 հազար 410 ռուբլի։ Բուժվողների և հանգստացողների ընդհանուր թիվը հասնում է 455 հոգու։

✪ Լայն սպառման ապրանքների արդյունաբերության աշխատողների պրոֆմիության անդամներից անցյալ տարի 526 հոգի ստացել են սանատորիաների ուղեգրեր, իսկ 932 հոգի հանգստյան տների ուղեգրեր։

Միաժամանակ նույն պրոֆմիության անդամների երեխաներից 1500 հոգի անցյալ տարի իրենց ամառային հանգիստը անցկացրին Ծաղկաձորի ու Կիրովականի պիոներական ճամբարներում։ Նրանցից 160-ը Հայրենական պատերազմում զոհվածների և հաշմանդամների երեխաներ են։

---



# ԱՄՆ-Ի ՔԱՅՔԱՅԻՉ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅՈՒՆԸ ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԴԵՄ

Ա. ԲՈԲՐՈՎՍԿԻ

Տարեցտարի ավելի է ամրապնդվում և նոր ուժերով համալրվում Սովետական Միության ու Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի կողմից գլխավորվող սոցիալիզմի ու դեմոկրատիայի համաշխարհային լագերը։ Ժողովրդա-դեմոկրատական պետությունները Սովետական Միության եղբայրական և անշահախնդիր օգնությամբ, հաջողությամբ զարգացնելով էկոնոմիկան և կուլտուրան, բարձրացնելով իրենց ժողովուրդների բարեկեցությունը, վստահորեն առաջ են ընթանում սոցիալիզմի ուղիով։

Սոցիալիստական խաղաղ շինարարության մեջ Սովետական Միության, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի ու սոցիալիզմի լագերի մյուս երկրների կողմից ձեռք բերված հսկայական հաջողությունները կատաղի զայրույթ են առաջ բերում իմպերիալիստական լագերում և առաջին հերթին Ամերիկայի Միացյալ Նահանգների ագրեսիվ շրջաններում։ ԱՄՆ-ի կառավարող շրջանները բա-

ցերբաց կանգնել են նոր պատերազմի նախապատրաստման ուղու վրա, համաշխարհային տիրապետություն նվաճելու նպատակով։

ԱՄՆ-ը հատկապես ակտիվ քայքայիչ աշխատանք է տանում սոցիալիստական լագերի երկրների դեմ, ցինիկաբար հայտարարելով այդ երկրներն «ազատագրելու», այսինքն՝ այնտեղ հաստատված սոցիալիստական ու դեմոկրատական կարգերը լիկվիդացնելու և նորից այդ երկրների ժողովուրդների վզին կապիտալիստական ռեժիմ փաթաթելու իր ձգտման մասին։

Այս նպատակով ԱՄՆ-ի կառավարող շրջանները տենդորեն կազմակերպում են ամեն տեսակ ագրեսիվ բլոկներ ու միություններ, կնքում են միակողմանի պայմանագրեր ու պակտեր, որոնց սուր ծայրն ուղղված է խաղաղասեր ժողովուրդների դեմ։ ԱՄՆ-ը և նրա պարտնյորները Եվրոպայում ստորագրեցին փարիզյան համաձայնագրերը, որոնք նախատեսում են գերմանական միլիտարիզմի վերածնումը և նրա ներգրավումը հյուսիսատլանտյան ագրեսիվ բլոկի մեջ՝ որպես հարվածային ուժի։ Ասիայում ամերիկյան իմպերիալիստները կազմակերպել են Հարավ-Արևելյան Ասիայի երկրների ագրեսիվ բլոկ (ՍԵԱՏՕ), չնայած նրան, որ ասիական



այնպիսի խոշոր երկրներ, ինչպիսիք են Հնդկաստանը, Ինդոնեզիան, Բիրման, հրաժարվեցին մասնակցել այդ բլոկին։ Հարավային Կորեայում ԱՄՆ-ը պաշտպանում է Լի Սին Մանի ֆաշիստական կլիկը, Հարավային Վյետնամում հենվում է Բաո Դայի դավաճանական կլիկի վրա։ ԱՄՆ-ը բացեիբաց պաշտպանում է չին ժողովրդի կողմից վռնդված Չան Կայ-շիի հանցավոր բանդան։ Բավական է ասել, որ չանկայշիական կլիկի հետ ԱՄՆ-ի կնքած ռազմական պայմանագիրը նախատեսում է ԱՄՆ-ի ուղղակի ռազմական միջամտությունը Չինաստանի ներքին գործերին։

Դեմոկրատական պետությունների դեմ ուղղված ամերիկյան իմպերիալիստների հանցագործ դիտավորությունների մեջ հատուկ տեղ է գրավում լրտեսական քայքայիչ գործունեությունը։

Լրտեսական գործունեությունը ղեկավարում է ԱՄՆ-ի Կենտրոնական հետախուզական վարչությունը, որի գլուխ կանգնած է հետախուզության գայլ Ալլեն Դալլեսը։

Ներկայումս ամերիկյան հետախուզական օրգանները արտակարգ մեծ հետաքրքրություն են ցուցաբերում Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի նկատմամբ։ Ամերիկյան ագրեսորները լրտեսական բազաների

մի ամբողջ սիստեմ են ստեղծել Հարավային Կորեայում, Յապոնիայում, Հոնգկոնգում, Ֆիլիպիններում։ Հետախույզների ուսուցման դպրոցներ և լրտեսական կենտրոններ են ստեղծված նաև Տայվանում, որտեղից լրտեսները, դիվերսանտները և տեռորիստները ուղարկվում են Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի տերիտորիան։

1954 թվականի նոյեմբերի 23-ին Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի Գերագույն ժողովրդական դատարանի ռազմական տրիբունալը դատավճիռ կայացրեց ամերիկյան 22 լրտեսների գործով, որոնցից 13-ը ամերիկացիներ էին, իսկ 9-ը չինացիներ։ Այս հանցագործները երկու լրտեսական խմբերի մասնակիցներ էին։ Առաջին խումբը ղեկավարում էր գնդապետ Ջոն Նոկս Առնոլդը՝ մատակարարման և կապի ամերիկյան 581-րդ ավիաբրիգադիայի հրամանատարը։ Երկրորդ խումբը ղեկավարում էին ամերիկյան կենտրոնական հետախուզական վարչության հատուկ գործակալներ Ջոն Թոմաս Դաունին (նույն ինքը՝ Ջեկ Դոնովեն) և Ռիչարդ Ջորջ Ֆեկտոն։

Ամերիկյան լրտեսների դատապարտումը արժանացավ չին ժողովրդի և բոլոր խաղաղասեր ժողովուրդների միահամուռ հավա-



նությանը։ Սակայն ամերիկյան ռեակցիան կատաղի ոռնոց բարձրացրեց։ Հետքերը կորցնելու նպատակով ԱՄՆ-ի պետական դեպարտամենտը շտապփույթ կերպով մի վերսիա հնարեց, թե դատապարտված ամերիկյան լրտեսները իբր լրտեսներ չեն, այլ «Միավորված Ազգերի զինծառայողներ»։ Այս պնդման կեղծությունը ամբողջովին մերկացվեց, երբ մամուլում հրապարակվեցին դատավարության նյութերը և հենց իրենց՝ լրտեսների ցուցմունքները։

Գնդապետ Առնոլդն, օրինակ, դատարանում ցուցմունք տվեց, որ ԱՄՆ-ի Կենտրոնական հետախուզական վարչությունը ինքնաթիռներով Չինաստան էր ուղարկում ամերիկյան գործակալ-դիվերսանտներ, և զենք մատակարարում նրանց, իսկ առաջադրանքը կատարելուց հետո նրանց տեղափոխում էր Յապոնիայի և Ֆիլիպինների ամերիկյան բազաները։

Մի ուրիշ ամերիկյան լրտես՝ Դաունին, այն հարցին, թե՝ «Ի՞նչ ուսուցում եք դուք անցել»— հայտարարեց. «Ես անցել եմ այնպիսի ուսուցում, որն անհրաժեշտ է լրտեսին։ Ինձ սովորեցնում էին զենք գործածելը, մանր ստորաբաժանումների տակտիկան, դիվերսիա կազմակերպելը, պայթուցիկ նյու-

թերի գործադրման եղանակները, հետախուզություն, ռադիոտեխնիկա, պարաշյուտով թռչել, առանց զենքի գործադրման մարտ վարել, աշխարհագրական քարտեզներ կարդալ և այլն»։ Դատարանում նման ցուցմունքներ տվեցին նաև ամերիկյան մյուս լրտեսները։

Վերջին ժամանակներս Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայում հայտնաբերվել և անվտանգ են դարձվել ամերիկյան լրտեսության շատ բներ։ Ֆուցզյան գավառում անվտանգ դարձվեց ամերիկա-չանկայշիական գործակալների մի մեծ շայկա, որը հետախուզական տվյալներ էր հավաքում և դիվերսիաներ կատարում գավառի առափնյա շրջաններում։

Ամերիկյան լրտեսության խոշոր կենտրոն հայտնաբերվեց նաև Շանհայում։ Այդ կենտրոնի ղեկավար Խյու Ֆրենսիս Ռեդմոնդը (նույն ինքը՝ Ջերում Ստրոչեր, լրտեսական մականունը՝ «Էվկլիդ») և նրա համհարզները տեղեկություններ էին ձեռք բերում պաշտպանական կառուցումների, Լյաոդուն թերակղզու վրա գտնվող ռազմա-ծովային և ռազմա-օդային ուժերի, Վամպու գետի վրա գտնվող ռազմանավերի կրակային հզորության, Հյուսիս-Արևելյան և Հյուսիսային Չի-



նաստանի ռազմական արդյունաբերության մասին։

Արդյունաբերական ձեռնարկություններում քայքայիչ աշխատանք տանող ամերիկյան լրտեսների և դիվերսանտների հանցագործ բներ մերկացվեցին Տյանշանում, Տյանցզինում և Ֆուշունում։ Ինչպես նշում է չինական «Ժենմինժիբաո» թերթը, այդ ամբողջ լրտեսական գործունեությունը անմիջական կապ ունի Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի նկատմամբ ԱՄՆ-ի կառավարող շրջանների ունեցած ագրեսիվ պլանների հետ։

Ամերիկյան հետախուզության պլաններում մեծ տեղ է գրավում քայքայիչ աշխատանքի կազմակերպումը Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի դեմ։

Արևմտյան Գերմանիայում և Արևմտյան Բեռլինում, օրինակ, ամերիկյան միջոցներով և ԱՄՆ-ի հետախուզության ղեկավարության տակ աշխատում են բազմաթիվ լրտեսական և դիվերսիոն կազմակերպություններ։ Արևմտագերմանական բուրժուական «Ֆրանկֆուրտեր ալգեմեյնե» թերթը «Գաղտնի կազմակերպությունների ընդհատակյա պատերազմը» հոդվածում տագնապով նշում է, որ Արևմտյան Գերմանիան դարձել է այդ լր-

տեսական կազմակերպությունների հանցավոր գործունեության թատերաբեմ:

Արևմտյան Գերմանիայում ամերիկյան հետախուզության ղեկավարությամբ ստեղծված է խոշորագույն լրտեսական կենտրոն, որը հայտնի է որպես «Գելենի կազմակերպություն»: Նրա գլուխ է կանգնած նախկին նացիստական գեներալ-հետախույզ Ռեյնհարդ Գելենը:

Հենց ամերիկյան հետախուզության հրամանով այս կազմակերպության կողմից ուղարկված պրովոկատորները 1953 թվականի հունիսի 17-ին Բեռլինում փորձեցին կազմակերպել սաբոտաժի պրովոկացիոն ակտեր: Ինչպես հայտնի է, այդ փորձը խայտառակ կերպով տապալվեց:

Փաստերը ցույց են տալիս, սակայն, որ բեռլինյան պրովոկացիայի ձախողումը ոչինչ չսովորեցրեց նրա կազմակերպողներին: Անցած տարվա նոյեմբերին ԳԴՌ-ի Գերագույն դատարանը քննեց Գելենի լրտեսական կազմակերպության յոթ գործակալների գործը: Դատարանում հաստատվեց, որ մեղադրյալներ Կ. Բանդելովը և Ի. Միգերան Գելենի կազմակերպությանն էին հանձնում կարևորագույն փաստաթղթերի հազարավոր նկարներ: Պատերազմի ժամանակ այդ գործակալները պետք է ցույց տային ամերիկ-



յան ռմբակոծիչներին ռմբակոծման նպատակները: Բակտերիոլոգիական զենքի օգտագործման դեպքում նրանք պետք է հաղորդեին ԳԴՌ-ում համաճարակի տարածման մասին:

Մեղադրյալները ցուցմունք տվեցին, որ Գելենի կազմակերպությունը ամերիկացիների առաջադրանքներով լրտեսությամբ է զբաղվում նաև Սովետական Միության, Լեհաստանի, Չեխոսլովակիայի և խաղաղասեր մյուս երկրների դեմ: Գելենի գործակալների լրտեսական և դիվերսիոն գործունեությունը նպատակ ունի տնտեսապես թուլացնել Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկան, խախտել նրա հասարակական կարգը և պատերազմ նախապատրաստել ԳԴՌ-ի դեմ: 1953—54 թվականների ընթացքում Գելենի կազմակերպության հարյուրավոր գործակալներ ձերբակալվեցին, շատ գործակալներ տեսնելով իրենց հանցագործ աշխատանքի անմտությունը, իրենք հանձնվեցին ԳԴՌ-ի անվտանգության օրգաններին:

1955 թվականի հունվարի 3-ին Լեհաստանի մամուլի գործակալությունը հայտնեց, որ Արևմտյան Բեռլինում Գելենի կազմակերպության հետախուզական կենտրոնի պետի նախկին տեղակալ Ֆրանցիշեկ Նեյդեբաուերը հանձնվել է Լեհական ժողովրդական ռես-

պուբլիկայի իշխանություններին։ Նա հաստատեց ԳԴՌ-ում բանտարկված լրտեսների ցուցմունքները և ցույց տվեց, որ Միացյալ Նահանգների հետախուզությունը «ֆինանսավորում է Գելենի կազմակերպությանը և հանձնարարում է նրան լրտեսական ինֆորմացիա հավաքել, մասնավորապես Լեհաստանի մասին»։

Լայնորեն հայտնի են Չեխոսլովակիայի, Հունգարիայի, Բուլղարիայի, Ռումինիայի և ժողովրդական դեմոկրատիայի այլ երկրների դեմ ամերիկյան հետախուզական օրգանների լրտեսական և դիվերսիոն գործունեության փաստերը։ Միայն Չեխոսլովակիայում վերջին տարիներս անվտանգության օրգանները բնակչության օգնությամբ մերկացրել և ձերբակալել են ավելի քան 1.200 լրտես և դիվերսանտ։

Սովետական Միության, ինչպես նաև ժողովրդական դեմոկրատիայի երկրների աշխատավորները արթուն կերպով հետևում են ամերիկյան ագրեսորների մեքենայություններին, ուժեղացնում են իրենց զգոնությունը, վճռական հակահարված են տալիս մեր խաղաղ ստեղծագործական աշխատանքը խանգարող իմպերիալիստների բոլոր և ամեն տեսակի փորձերին։

---

## СОДЕРЖАНИЕ





## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել.

ԱԼ. ՏՈԼՍՏՈՅ— «Ոսկե բանալին կամ Բուրատինոյի արկածները»: Գինը 3 ռ. 65 կ., 108 էջ, տիրաժ 10000:

ԵՂԻՇԵ ՉԱՐԵՆՑ— «Լենին»: Գինը 3 ռ. 05 կ., 48 էջ, տիրաժ 10000:

Կ. ՖԵԴԻՆ— «Առաջին բերկրանք»: Գինը 7 ռ. 35 կ., 448 էջ, տիրաժ 5000:

ԳՈՒՐԳԵՆ ՄԱՀԱՐԻ— «Երկեր» գինը 9 ռ., 512 էջ, տիրաժ 10000:

ՎԻԳԵՆ ԽԵՉՈՒՄՅԱՆ— «Մեզ մոտ հարավում»: Գինը 8 ռ. 10 կ., 488 էջ, տիրաժ 5000:

ՍԵՐՈ ԽԱՆԶԱԴՅԱՆ— «Որոտանի կիրճում»: Գինը 65 կ., 28 էջ, տիրաժ 5000:

Ջ. Դ. ԲԵՌՆԱԼ— «Գիտությունը և հասարակությունը»: Գինը 7 ռ. 20 կ., 441 էջ, տիրաժ 4000:

---

**Խմբագիր՝ ԳՐ. ՊԵՏՐՈՍՅԱՆ**

**Отдел Пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**
**№ 6 1955 г.**

ՎՖ 08826 Պատվեր 266 Տիրաժ 8250

ՀՍՍՌ Կուլտ. մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության № 2 տպարան, Երևան, Կնունյանցի № 8, 1955 թ., գինը 50 կոպ.: